# Մաթեմատիկական Մոտեցում Հայ-Թուրքական Դիվանագիտական Հարաբերություն Ստեղծման Հարցի Շուրջ Կամ Հանապազօրյա Նավթը և Հայաստանի Աշխարհաքաղաքական Դիրքը

( 31 Դեկտեմբերի 2009թ. – Լոս Անջելոս, ԱՄՆ )

## Ներածություն

Մինչև այժմ Երկիր մոլորակի վրա Մարդկային քաղաքակրթության՝ հատկապես ռազմական մեքենայի, շարժիչ ուժը նավթն է և դրան ուղեկից գազը։

Վերջին 100 տարվա Երկիր մոլորակի քաղաքական կյանքը կարելի է համարել պայքար - տիրանալու համար աշխարհի էներգետիկ պաշարներին՝ հատկապես նավթի և գազի պաշարներին։ Գուցե պատմագետները կարողանան ապացուցել նաև, որ անգամ Սովետական Միության փլուզման բուն պատճառը հանդիսանում էր Արևմուտքի կողմից Կասպյան Ծովի ավազանի ընդերքում ամբարված նավթին ու գազին տիրանալը։ Ինչպես նաև Կասպյան ավազանին հարող ութ հանրապետությունները անջատել Ռուսաստանի ենթակայությունից, որպեսզի հնարավոր դառնա խողովակներով տեղափոխել նավթը և գազը այդ նոր առաջացած պետությունների տարածքներով դեպի աշխարհի ինդուստրիալ զարգացած երկրները։ [1], [2], [3]

## Հայաստանը և էներգետիկ պատերազմը

Մեզ իհարկե հետաքրքրում է մեր Հայրենիքի՝ Հայաստանի ճակատագիրը այս էնրգետիկ պատերազմում, և թե ինչպես Հայաստանի աշխարհաքաղաքական դիրքն ու դերը կապահովեն Հայաստանի ռազմաքաղաքական վերելքին։ [3], [4]

Աշխարհի ինդուստրիալ զարգացած երկրները Կասպից Ծովի ավազանի ընդերքում ամբարված այդ հանապազօրյա նավթի ու գազի կարիքը ունեն, որպեսզի կարողանան գոյատևել և միևնույն ժամանակ ապահովել քաղաքակրթության առաջընթացը։ Մարդկությունը, ինչպես զարգացող օրգանիզմի սաղմը, կազմավորում է իր արյունատար (նավթային և գազային) զարկերակները, որը հնարավոր չէ կասեցնել։ Սա է մարդկության ապագայի և քաղաքակրթության առաջընթացի նախադրյալը։

Այն ազգությունները և պետությունները, որոնք ի վերուստ բախտավոր են, որ իրենց ընդերքում գոյություն ունի այդ հարստությունը, պետք է լավ գիտենան որ այն միայն իրենց սեփականությունը չէ, այլ այն պատկանում է ամբողջ մարդկությանը: Իրենք կօգտվեն միայն այդ հարստության վաճառքից առաջացած եկամտից, ինչպես դա անում են նավթով հարուստ Արաբական պետությունները:

Ի շահ քաղաքակրթության գոյատևման և առաջընթացի, մարդկությունը՝ հանձինս իր զարգացած պետությունների, իրավունք ունի ամեն գնով, ընդհուպ մինչև ռազմական ուժի միջոցով, վերցնել այդ նավթը, եթե այդ նավթային հարստության վրա նստած պետությունները կամավոր չտրամադրեն (չվաճառեն) այն մարդկությանը: Իսկ հարևան երկրները պետք է թույլատրեն այդ գազանավթային խողովակների տարանցմանը իրենց երկրի տարածքով:[6]

Թե ի՞նչ ճանապարհով Կասպից Ծովի ավազանի ընդերքում ամբարված նավթը և գազը պետք է տեղափոխվի դեպի Արևմուտքի և Արևելքի զարգացած երկները, ապա դա կապ ունի տվյալ տարածաշրջանի աշխարհա-քաղաքական կացության հետ, որը անցած 20 տարվա ընթացքում իր վերջնական քաղաքական կայունությունը դեռ չի ստացել: [1], [2], [3], [4]

## Կասպյան գազի և նավթի տեղափոխման հնարավոր տարբերակները

Համենայն դեպս տեսականորեն հնարավոր է Կասպյան նավթն ու գազը տեղափոխել դեպի արդյունաբերական զարգացած երկրները երկու ճանապարհով՝ արևելյան ճանապարհով և արևմտյան ճանապարհով:

1. Արևելյան ճանապարհը – դա Ադրբեճանից և Միջին Ասիական մյուս երկրներից նավթն ու գազը տեղափոխել դեպի Արաբական Ծով: [5]
2. Արևմտյան ճանապարհը - դա Ադրբեճանից նավթն ու գազը տեղափոխել դեպի Եվրոպա: [9], [10], [11], [12]

Արևելքի և Արևմուտքի զարգացած պետությունները մոտ 20 տարի աշխատում էին այս երկու ճակատի վրա էլ, կիրառելով իրենց ողջ դիվանագիտական հմտությունը, տնտեսական և ռազմական հզորությունը: Բայց այդպես էլ վերջնական հաջողության չհասան: [6]

## Արևմուտքի համար միակ ընդունելի Արևելյան ճանապարհը

Արևելյան ճանապարհի համար հիմնականում արգելք էին հանդիսանում Աֆղանստանի և Իրանի կրոնական մուսուլմանական կառավարությունները: 10 տարի տևող բանակցությունները (1990թթ. – 2000թթ.) համոզելու համար Աֆղանստանի կառավարող իշխանություններին, որ թույլատրեն իրենց

տարածքով անցկացնել այդ արյունատար (գազա-նավթային) զարկերակը՝ ձախողվեցին, դեմ առնելով նեղ կրոնական աշխարհաըմբռնման հետ: Իսկ Արևելքի և Արևմուտքի արդյունաբերական զարգացած երկրները օդի ու արյան պես կարիք ունեն այդ գազին ու նավթին:

## Արևելյան գազանավթախողովակի ճակատագիրը

Արևմտյան քաղաքակրթությունը և Աշխարհի զարգացած արդյունաբերական երկրները, հանձինս ԱՄՆ-ի, այնքան կարիք ունեին Կասպյան նավթին ու գազին, որ ծրագրավորեցին և իրագործեցին հուսահատ ու հանդուգն մի քայլ - իրենք իրենց իսկ ձեռքով պայթեցրին իրենց ազգային խորհրդանիշեր համարվող - Նյու Յորքի երկու երկնաքերերը և Պենտագոնի շենքի մի մասը, որպեսզի այս միջոցով թողտվություն ստանան և պատերազմ հայտարարեն Աֆղանստանին, ինչպես նաև ներխուժեն Իրաք: [6]

Արևմուտքի պատերազմը Աֆղանստանի դեմ հույս ներշնչեց, որ կարճ ժամանակում կլուծվի արևելյան գազանավթատար խողովակաշարի հարցը: Բայց անցավ 8 տարի և պատերազմի վերջը դեռ չի երևում, նույնիսկ ավելին, Արևմուտքը կարող է պարտվել այդ պատերազմում, ինչպես դա պատահեց 20 տարի առաջ Սովետական Միության հետ:

## Արևմտյան ճանապարհի հնարավոր տարբերակները

Կասպյան ավազանի գազն ու նավթը խողովակներով Ադրբեջանից դեպի Եվրոպա տանելու ճանապարհի համար Արևմուտքը հետազոտում և ծրագրավորում էր հետևյալ հնարավոր ճանապարհները, հիմնականում հաշվի առնելով Ադրբեջանի քաղաքական պահանջները.

- Ադրբեջան – Չեչնիա - Ռուսաստան – Սև Ծով – Եվրոպա
  (Բաքու-Նովորոսիսկ գազանավթախողովակ 1996-1997թթ.) [9]
- Ադրբեջան – Վրաստան – Եվրոպա նավթախողովակ
  (Բաքու – Թբիլիսի – Սուփսա 1994-1999թթ. [10])
  (Բաքու – Թբիլիսի – Ջեյհան –2002-2005թթ. [11])
- Ադրբեջան – Վրաստան – Թուրքիա – Եվրոպա գազախողովակ
  (Նաբուկո ծրագիրը նախատեսվում էր սկսել 2010 թ.) [12]
- Ադրբեջան – Հայաստան – Թուրքիա – Եվրոպա
  (Ամենակարճ և ամենաապահով ճանապարհը, որին Ադրբեջանը կտրականապես դեմ էր) [4], [12], [14], [15], [16]

Արևմտյան գազանավթախողովակների ճակատագիրը

Կասպյան ավազանի նավթը և գազը արևմտյան ճանապարհով տանելու վերը նշված այդ չորս ճանապարհների ընտրության հարցում նույնպես բախվեցին Մերձավոր Արևելքի և Աշխարհի բոլոր քաղաքական և տնտեսական շահերը: Եթե դրան ավելացնենք նաև իր անկախ պետականությունը ստեղծած Արցախի և նավթի պաշարներ ունեցող Ադրբեճանի միջև մինչև այժմ գոյություն ունեցող պատերազմական դիմակայություն: Ապա հասկանալի կդառնա այդ տարածաշրջանի քաղաքական թնջուկի ամբողջ բարդությունը:

- Չեչնիայով և Ռուսաստանով անցնող արևմտյան ճանապարհի առաջին տարբերակը Եվրոպայի համար քաղաքականապես վտանգավոր էր: Նախ մուսուլմանական Չեչնիայում ահաբեկչությունները մինչև այժմ դեռ շարունակվում են և երկրորդ՝ Ռուսաստանը կարող էր օգտագործել գազանավթախողովակը որպես Եվրոպայի նկատմամբ քաղաքական ճնշման միջոց, ինչպես դա պատահեց 2009թ. Հունվարի 1-ին, երբ Գազպրոմը փակեց Եվրոպա հոսող գազը: Ադրբեճանը 2008թ. Փետրվարին վերջնականապես դադարեցրեց այս նավթախողովակի շահագործումը: [8]

- Վրաստանի տարածքով դեպի Սև Ծով կամ դեպի Թուրքիա տանող արևմտյան ճանապարհի երկրորդ տարբերակը նույնպես վտանգավոր էր: Այդ Բաքու - Սուփսա նավթախողովակաշարի վրա կատարված մի շարք պայթեցումներից հետո, այն 2008թ. Օգոստոսի 6-ին ապահովության պատճառաբանությամբ նույնպես վերջնականապես փակվեց: [10]

  Չնայած արդեն ավարտվել էր (2002-2005թթ.) և շահագործվում էր Բաքու – Թբիլիսի – Ջեյհան նավթախողովակաշարը, բայց համենայն դեպս այդ տարբերակը նույնպես ապահով չէր, որովհետև այն անցնում էր քաղաքականապես անկայուն Վրաստանի տարածքով և հետևաբար հղի էր անկանխատեսելի քաղաքական փոփոխություններով: Ինչպես դա ապացուցվեց 2008թ. Օգոստասին Վրաստանի և Ռուսաստանի միջև ծագած 5 օրյա պատերազմով: [7] Սրան ավելացնենք նաև այն որ Ռուսաստանը վճռականորեն դեմ էր նավթախողովակը իր նկատմամբ թշնամական Վրաստանով անցկացնելու տարբերակին: Բացի այդ Թուրքիայի տարածքում այդ խողովակաշարը անցնում էր նաև Քրդական ազդեցության ոլորտներով: Այդ նավթախողովակը պայթեցվեց քրդերի կողմից 2008թ. Օգոստոսի 6-ին: (Ռուս Վրացական պատերազմը սկսվեց 2008թ. Օգոստոսի 7-8-ին: Ինչպիսի զուգադիպություն կամ…) [11]

- Ադրբեճան – Վրաստան – Թուրքիա – Եվրոպա գազախողովակ անցկացնելու երրորդ տարբերակը [12], որը նախատեսվում էր սկսել և

ավարտել 2010 – 2014թթ., նույնպես հուսալի չէր, որովհետև այն անցնելու էր նույնպես քաղաքականապես անկայուն Վրաստանով և բացի դրանից այն մրցակցելու էր Գազպրոմի հետ և հետևաբար Ռուսաստանը ամեն ճիգ կգործադրեր որ այդ նախագիծը (Նաբուկո) վիժեցվեր կամ գոնե Վրաստանով չանցներ:

*(Այս բոլոր գազանավթային խողովակաշարեր անցկացնելու ծրագրերի մասին մենք խոսում ենք երրորդ դեմքով, որովհետև Հայ – Թուրքական արձանագրությունները ստորագրվելուց հետո դրանք իրոք դարձան պատմություն: - հեղինակներ)*

## Ո՞րն է լուծումը Արևմուտքի տեսանկյունից

Աշխարհի արդյունաբերական զարգացած երկրները հասկացան որ իրենց գոյատևման համար այդքան ճակատագրական դարձաց Կասպյան ավազանի ընդերքի գազն ու նավթը ապահով կհասնի Եվրոպա միայն ու միայն Հայաստանի տարածքով, չորրորդ տարբերակը:
(Շնորհակալություն 2008թ. Ռուս – Վրացական պատերազմին) [7]

Արևմուտքի համար Հայաստանը հանդիսանում է Մերձավոր Արևելքի և Կովկասյան տարածաշրջանների ամենահուսալի և ամենաապահով երկիրը: Հետևաբար Ադրբեճան – Հայաստան – Թուրքիա – Եվրոպա գազանավթային խողովակների կառուցումը Եվրոպային և Արևմտյան մյուս զարգացած երկրներին կապահովի գազի և նավթի կայուն մատակարարմամբ, առանց ընդհատման: Շատ կարևոր է, որ այս ճանապարհին դեմ չէ նաև Ռուսաստանը:

Եթե մենք այս լույսի տակ քննարկենք վերջի տարիներին կատարված դեպքերը, ապա հասկանալի կդառնա թե ինչո՞ւ 2007-2008թթ. Հայաստանի նախագահական ընտրության օրերին, երկար լռությունից հետո անսպասելիորեն նորից քաղաքական ասպարեզ իջավ Սիոնիզմի գործակալ Լևոն Տեր-Պետրոսյանը: Հասկանալի կդառնա նույնպես, որ Հայաստանում Արևմուտքի կողմից ծրագրավորած «*երգ ու պարի*» հեղափոխության պարտությունից հետո, Արևմուտքը հաշտվեց Արցախի փաստացի գոյության հետ: [17]

Քանի որ Կասպյան ավազանի գազն ու նավթը արևելյան ճանապարհով տանելու բոլոր նախագծերը անորոշ ժամանակով հետաձգվել էին, իսկ Ադրբեճանի պահանջով Հայաստանը շրջանցող նավթամատակարարման բոլոր երեք նախագծերը նույնպես ձախողվել էին, ապա Արևմուտքի համար կենսապես անհրաժեշտ և հրատապ դարձավ արագացնել Կասպյան ավազանի գազն ու նավթը Հայաստանով տանելու տարբերակը, անտեսելով անգամ

Ադրբեճանի քաղաքական շահերը: Հասկանալի է որ Հայաստանյան տարբերակը կարող է գոյություն ունենալ միայն Հայ – Թուրքական դիվանագիտական հարաբերություններ հաստատելուց հետո: Ահա այսպես նորից արժևորվեց Հայաստանի աշխարհաքաղաքական դիրքը և հզոր Հայաստանի գոյության կենսական կարևորությունը Արևմտյան քաղաքակրթության գոյատևման և զարգացման համար: [4], [16]

## Սերժ Սարգսյանը օգտվեց ի վերուստ ընձեռնված աստեղային ժամից

Որպեսզի Հայաստանը և Թուրքիան հանդիսանան Կասպյան ավազանի գազի ու նավթի տարանցիկ պետություններ, ապա նվազագույնը անհրաժեշտ է որ այդ երկու պետությունները ունենան ձևական, առանց նախապայմանների դիվանագիտական հարաբերություններ: Այլապես հնարավոր չէ գազն ու նավթը տեղափոխել Եվրոպա: Այդքան շահարկվող «սահմանների բացում» արտահայտությունը առաջին հերթին նշանակում է որ գազի և նավթի խողովակները Հայաստանի սահմանից պետք է անցնեն դեպի Թուրքիա և ուրիշ ոչինչ: Իսկ տնտեսական կամ այլ տեսակի վնասակար հետևանքների դեմ Հայաստանի կառավարությունը կարող է, իրավական ճանապարհներով, գործնականորեն վնասազերծել բոլոր հնարավոր վտանգները: [25]

Հազար տարուց ավելի, մենք՝ Հայերս, գոյատևելով առանց ազգային պետականության և մշտապես գտնվելով մեզ նվաճած ցեղերի դրածո կառավարիչների ղեկավարման ներքո, մենք հոգեպես խեղվել ենք և կորցրել մեր ղեկավարներին հավատալու ունակությունը: Այլապես ինչպես բացատրել այն փաստը, որ Հայաստանի նախագահ Սերժ Սարգսյանը բազում անգամ ի գիտություն մեզ և ի լուր ամբողջ աշխարհի բացահայտ հայտարարել է Հայաստանի պաշտոնական դիրքորոշումը Հայոց ցեղասպանության և Արցախի հարցում: Բայց մենք չենք հավատում… [25], [26]

Պետք է ականջ ունենալ որ կարողանանք լսել Հայաստանի Նախագահի հետևյալ հայտարարությունները. «*Ցանկացած հարաբերություն Թուրքիայի հետ չի կարող կասկածի տակ դնել հայ ժողովրդի հայրենազրկման ու ցեղասպանության իրողությունը: Այն հայտնի փաստ է եւ պետք է ճանաչվի ու դատապարտվի ողջ առաջադեմ մարդկության կողմից.*» կամ «*Այս հարաբերությունները որեւէ ձեւով չեն առնչվում ու չեն կարող առնչվել Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրի կարգավորման հետ, որն անկախ ու ինքնուրույն գործընթաց է:*» և այլն և այլն… [25]

Բայց արի ու տես որ մենք ավելի շատ հավատում ենք մեր ազգի դարավոր թշնամիների կողմից տարածված հերյուրանքներին քան թե Հայաստանի

նախագահ Սերժ Սարգսյանին, որն իր ընտանյոք հանդերձ մեր արյունակիցն է և ոչ թե Եբրայեցու փեսա: [24]

Հուսով եմ չեք մոռացել, որ Սերժ Սարգսյանը, նախկան Հայաստանի նախագահ ընտրվելը, պաշտոնավարել էր Հայաստանի պաշտպանության և Հայաստանի անվտանգության հետ կապված հիմնարկություններում և նա շատ լավ գիտե թե ինչպես պետք է պաշտպանել Հայաստանի ազգային շահերն ու ազգային անվտանգությունը, ինչպես շախմատի վարպետ, հաշվարկելով տասնյակ քայլեր և տարբերակներ: [27]

Քաղաքական փչող քամին մեր Հայաստանի ազգային շահերին բարենպաստ է և այդ հզոր մակընթացության շնորհիվ Հայաստանը միայն ու միայն կբարձրանա, ուզեն դա մեր թշնամիները թե ոչ: Եվ ոչ մի ուժ չի կարող մեր վերելքը կասեցնել, որովհետև մեր գալակտիկայի կենտրոնից տարածվող այդ բարերար մակընթացությունը մեզ միայն կհզորացնի:

## Հայաստանի, Եվրոմիության, ԱՄՆ-ի և Ռուսաստանի միջև կնքված գործարքը

2009թ. Հոկտեմբերի 10-ին, Շվեյցարիայի Ցյուրիխ քաղաքի համալսարանում, դիվանագիտական ամենաբարձր մակարդակով (ԱՄՆ, Եվրոմիություն և Ռուսաստան), ստորագրվեցին Հայ – Թուրքական արձանագրությունները: Այս դիվանագիտական հաջողության համար ԱՄՆ-ի նախագահ Օբաման դարձավ խաղաղության Նոբելյան մրցանակակիր: Այս փաստը մեկ անգամ ևս ապացուցում է թե այս գործարքը ինչքան կարևոր էր Արևմուտքի գոյատևման ու զարգացման համար: [18], [19], [20], [21], [22], [23]

Ցանկացած քաղաքական գործարք, սառցալեռան պես, կազմված է երկու մասից՝ երևացող մաս և անտեսանելի մաս: Հայաստանի և Արևմուտքի միջև քաղաքական այս գործարքի երևացող մասը դա Հայ – Թուրքական դիվանագիտական հարաբերություն հաստատելն է: Իսկ այս գործարքի անտեսանելի մասը - մեզ համար ամենակարևորն է: Ըստ այդ գործարքի և Հայաստանի պահանջով , որպես բարի կամքի արտահայտություն, Արևմուտքը Հայաստանում ներդրված և տնավորված իր բոլոր գործակալներին և «հինգերորդ շարասյանը» հրամայեց “abort - վիժեցնել” - այսինքն հետ քաշվել և դադարեցնել ամեն տեսակի քաղաքական, պրոպագանդիստական և թշնամական գործողությունները Հայաստանի նկատմամբ:

Արևմուտքի «վիժեցնել» հրամանից հետո, կարծես մոգական գավազանի մի հարվածով մենք ականատես եղանք թե ինչպես շատերը Հայաստանի

Խորհրդարանում վայր դրեցին իրենց պատգամավորական լիազորությունները, շատ-շատերը անձնական դրդապատճառներով հրաժարվեցին իրենց պաշտոններից: Շատ կուսակցություններ սկսան ճաք տալ և պառակտվել, իսկ զանգվածային լրատվական միջոցները հիմնականում դադարեցրին իրենց թունոտ, քայքայիչ գործունեությունները և դարձան հայանպաստ: Հայախոս Հրաների Շարժումը (ՀՀՇ) - նույնպես պապանձվեց:

Ի՞նչ կպատահեր Հայաստանին եթե մենք օգնության ձեռք չմեկնեինք Արևմուտքին և Աֆղանստանի նման հրաժարվեինք

Իմ որդու՝ Հայկի ինքնաբուխ «ի՞նչեր կպատահեին մեզ եթե մենք չհամաձայնեինք» արտահայտությունը մեզ պետք է մտածելու առիթ ընձեռնի: Երբ սկսում ես մտածել թե ինչեր կարող էին պատահել մեզ հետ, սառսռում ես: Ահա թե ինչեր աղետներ կարող էին պատահել.

- Վերհիշենք թե ինչ պատահեց Աֆղանստանի հետ, որի կրոնական կառավարությունը մերժեց Կասպյան նավթը իր տարածքով տանելուն: [6]
- 2008թ. Մարտի մեկը մեզ հիշեցնում է որ մենք համարյա քաղաքացիական պատերազմի շեմին էինք և չնայած այժմ այդ վիշապը քնած է, բայց ամեն րոպե իր տերերը կարող են նրան նորից արթնացնել: Տեսեք թե ինչե՛ր են կատարվում Իրանում այս նոր տարվա նախօրեին:
- Ադրբեջանը կանաչ լույս կստանար պատերազմ սանձազերծելու Արցախի և բնականաբար Հայաստանի նկատմամբ:
- Նորից փոշու տակից կհանեին Զանգեզուր – Արցախ փոխանակման հարցը:
- Նորից կսկսվեր զանգվածային արտագաղթը Հայաստանից:
- Տեղի կունենար նաև այնպիսի աննկանխատեսելի այլ աղետներ, որ անգամ Հայաստանը որպես անկախ պետություն կդադարեր գոյություն ունենալուց:

Դրա համար ի՞նչ է անհրաժեշտ

Որպեսզի վերևում նկարագրված այդ սարսափելի դժբախտությունները չպատահեն մեր ազգի հետ, մենք պետք է կարողանանք նավարկել աշխարհում տիրող քաղաքական հակասությունների միջև և մեր ազգի նավը կարողանանք ուղղել դեպի բաղձալի լուսավոր ապագան: Հենց դա է որ ամեն գնով ցանկանում է իրագործել Հայաստանի Նախագահը: Այլընտրանք չկա, բայց կան բազում բարիքներ: Հայաստանը նորից կդառնա Արևմուտքը և Արևելքը իրար կապող նոր Շերամի Ճանապարհը:

Ուրեմն որպեսզի Հայաստանը նորից բարձրանա և կատարի իրեն ի վերուստ ընձեռնված առաքելությունը, ապա անհրաժեշտ է որ Հայաստանի խորհրդարանը անհապաղ վավերացնի Հայ – Թուրքական արձանագրությունը:

Քանի որ Արևմուտքի և Սիոնիզմի շահերը այս հարցում խաչաձևվեցին, ապա անհրաժեշտ է նաև որ Հայաստանի ազգային անվտանգության մարմինները վնասազերծեն Հայաստանում ներդրված Մոսադի գործակալներին, որոնք կարող են ձախողել Հայաստանի խորհրդարանի բնականոն աշխատանքը (հիշենք 1999թ.) և տապալել արձանագրությունների վավերացումը: Նույնպես անհրաժեշտ է որ ժամանակավորապես արգելվեն ցույցերն ու միտինգները:

## Ազգային կուսակցությունների մասին

Թուրքիայի հետ դիվանագիտական հարաբերություններ ստեղծելու փաստը և այն հեռանկարը որ հայ պատմագետների առաջ կբացվեն Օսմանյան կայսրության և Երիտթուրք կուսակցության արխիվները, խուճապի մատնեց ավանդական երեք Հայ կուսակցություններին, որոնք բնազդաբար միասնական ճակատ կազմեցին ընդդեմ Հայ – Թուրքական արձանագրությունների: Մենք կարծում ենք որ այդ արխիվներից մենք շատ գաղտնի բաներ կիմանանք մեր ավանդական երեք կուսակցությունների և նրանց ղեկավարների ծագումաբանություն մասին: Շարքային հայրենասեր կուսակցականները իրավունք ունեն իմանալու թե ովքե՞ր են եղել իրենց շարքերում օտարերկրյա լրտեսները և թե ի՞նչ դավադիր գործեր են կատարել նրանք Հայաստանի դեմ:

Դեռ ավելին մենք պահանջում ենք որ մեր ավանդական երեք Հայ կուսակցությունները բացեն իրենց արխիվները նույնպես, որպեսզի Հայ ազգը իմանա թե ի՞նչ է կատարվել մեզ հետ անցյալում: Ինչքան էլ ցավոտ լինի այս գործողությունը մեր համար, մենք այն պետք է կատարենք, եթե ցանկանում ենք մաքրվել և բուժվել անցյալի վերքերից: Միայն այդ դեպքում նոր սերունդը կհավատա կուսակցությունների անկեղծությանը և հայանպաստությանը:

Մեր այս գրությունը թող համարվի որպես Նազարյան ընտանիքի կողմից 2010 թվականի նոր տարվա ուղերձը բոլոր ժամանակների Հայաստանին և մեր Արորդիների ցեղին: Երկիր մոլորակի վրա ծագում է Հայկական Գարունը:

Կեցցե՛ Արորդիների Հայրենիք Հայաստանը

**Ռոբերտ Նազարյան**
robert@nazaryan.com
http://www.armeniantheory.com

**Հայկ Նազարյան**
haik@hossank.com
http://www.hossank.com
http://www.youtube.com/Fedayi01

## Վկայակոչումներ

1. Oil and Geopolitics in the Caspian Sea Region
http://www.amazon.com/Oil-Geopolitics-Caspian-Sea-Region/dp/0275963950/ref=sr_1_1?ie=UTF8&s=books&qid=1261522882&sr=1-1

2. Caspian Oil and Gas: Production and Prospects
http://italy.usembassy.gov/pdf/other/RS21190.pdf

3. Պայքար հանուն Կասպյան ավազանի ռեսուրսների
http://www.armtown.com/news/am/zam/20070601/6397/

4. Armenia and Caspian Oil Pipelines (*Very important – 08/29/2001*)
http://www.cacianalyst.org/?q=node/181

5. Afghanistan Oil Pipeline
http://en.wikipedia.org/wiki/Afghanistan_Oil_Pipeline

6. Afghanistan: the pipeline war?
http://news.bbc.co.uk/2/hi/south_asia/1626889.stm

7. Russia–Georgia War 2008
http://en.wikipedia.org/wiki/2008_South_Ossetia_war

8. 2009 Russia–Ukraine gas dispute
http://en.wikipedia.org/wiki/2009_Russia-Ukraine_gas_dispute

9. Baku–Novorossiysk pipeline
http://en.wikipedia.org/wiki/Baku-Novorossiysk_Pipeline

10. Baku–Supsa Pipeline
http://en.wikipedia.org/wiki/Baku-Supsa_Pipeline

11. Baku–Tbilisi–Ceyhan pipeline
http://en.wikipedia.org/wiki/Baku-Tbilisi-Ceyhan_pipeline

12. Nabucco pipeline
http://en.wikipedia.org/wiki/Nabucco_pipeline

13. Armenia–Turkey relations
http://en.wikipedia.org/wiki/Armenia-Turkey_relations

14. Թուրքիայում շարունակում են խոսել Nabucco-ն Հայաստանի տարածքով անցկացնելու մասին
http://www.tert.am/am/news/2009/09/07/nabucco/

15. Gazprom reaches deal with Armenia
http://www.nytimes.com/2006/04/06/business/worldbusiness/06iht-gazprom.html

16. Կղառնա՞ Հայաստանը տարանցիկ երկիր
http://www.armtown.com/news/am/arv/20091124/72717/

17. Political map of Republic of Armenia and the Nagorno-Karabakh Republic
http://upload.wikimedia.org/wikipedia/en/b/b4/Map_of_Republic_of_Armenia_and_Artsakh_(Nagorno-Karabakh)_Republic.svg

18. Armenia – Turkey sign historic deal
http://www.youtube.com/watch?v=F2x_1cTTP9k

19. Armenia Turkey Protocols Signed
http://www.youtube.com/watch?v=0uAZ005FRzU

20. Senator Speaks About Armenian Turkish Protocols (American point view)
http://www.youtube.com/watch?v=65aWL1LMkZc

21. Signing of Armenian-Turkish protocols (Russian point view)
http://www.youtube.com/watch?v=yVvcNDsBZMw

22. The Republic of Armenia and the Republic of Turkey
New relations - / 10/ 10/ 2009 (Iranian point view)
http://www.youtube.com/watch?v=3oztXucLmSk

23. The Turkey-Armenia Protocols Were Signed: What's Next?
(Armenian diaspora point view)
http://www.youtube.com/watch?v=sl6jkzUbAew

24. Ադրբեջանական – Սիոնիստական
նախանձոտ և թշնամական մեկնաբանությունը
http://www.youtube.com/watch?v=BuyJJtDssZg

25. Նախագահ Սերժ Սարգսյանի ուղերձը
Հայաստանի ազգաբնակչությանը և համայն հայությանը
http://www.president.am/events/statements/arm/?year=2009&pn=0&id=51
http://www.youtube.com/watch?v=EOHUG6wo_PY

26. Президент Армении про Азербайджан и Карабах
http://www.youtube.com/watch?v=MnypaLLMGII

27. Serzh Sargsyan Biography
http://en.wikipedia.org/wiki/Serzh_Sargsyan